աշխատաւորներուն վրայ բռնութիւն բանեցնողներ կէս միլիոն ֆրանքի եւ հինգ տարուան բանտարկութեան դատապարտելու առաջարկը :

★ Բանթօղները հետզհետէ տեղի կուտան : Փարիզի նամակատուններուն մեծ մասը բաց է թէեւ նամակներու եւ ծրարներու ցրումը քանի մը օր պիտի տեւէ : Ինչպէս երէկ ալ գրած էինք, գործադուլը կը շարունակուի 13րդ արուարձանի նամակատան մէջ գրեթէ անկարելի դարձնելով «Յառաջ»ի կանոնաւոր առաքումը :

Կացութիւնը հետեւեալն է ուրիշ սպասարկութեանց մէջ — կազ՝ ճնշումը նուազած է շատ մը տեղեր : Ելեկտրականութիւն՝ սովորական արտադրութեան միայն հարիւրին 30ը : Աղբահաւաքները— գործադուլը կը շարունակուի գրեթէ բոլոր արուարձաններուն մէջ. ջուր՝ ճնշումը քիչ մը աւելցած է : Ցուղարկաւորներ՝ թաղումները կը կատարուին առանց երկար — բարակ արարողութեանց :

Գաւառներուն մէջ՝ —Մարսէյլ— ցոյցեր կը կատարուին փողոցներուն մէջ. ընդհանուր գործադուլ. Նաւահանգիստները բոլորովին ամայացած. գործադուլ հռչակած են նաեւ սպանդանոցի եւ պանդոկներու աշխատաւորները :

Նիս՝ ընդհանուր գործադուլ, կ'աշխատին միայն բեռնակառքերու վարիչները, ցոյցեր տեղի ունեցած են չորեքշաբթի օր : Կրընօպլը՝ հակառակ բոլոր դրդումներուն, ընդհանուր գործադուլ չկայ : Հեռաձայնի սպասարկութիւնը դադրած է : Մօտաւորապէս միեւնոյն անորոշ կացութիւնը Լիոնի, Քլէռմօն Ֆէռանի, Պէզիէի, Մոնլիւսոնի եւ ուրիշ շրջաններու մէջ :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՄԵՐԻԿԱՅԻ հանրապետական կուսակցութեան ականաւոր դէմքերէն Ճան Ֆօսթըր Տալըս երէկ Փարիզ հասաւ տեսակցութիւններ ունենալու համար ֆրանսական կառավարութեան ինչպէս նաեւ Միացեալ Նահանգներու արտաքին նախարար Մարշըլի հետ որուն խորհրդականներէն մէկն է : Տալըս պիտի տեսնուի զօրավար տը Կօլի հետ, իմանալու համար այս վերջինին տեսակէտները գերմանական հարցին մասին : Ամերիկեան շրջանակներու մէջ դիտել կուտան որ թէեւ զօրավարը իշխանութեան գլուխ չի գտնուիր, բայց իր բարոյական հեղինակութիւնը շատ մեծ է եւ կառավարութիւնը պարտաւոր է նկատի առնել զինքը կարեւոր խնդիրներու մէջ :

« ԱՆԳԼԻԱ պէտք է Գերմանիայէն հեռանայ» , կը յանձնարարէ «Պըրմինկըմի (Անգլիա) եպիսկոպոսը : «Դաշնակիցները ժողովրդավարութիւն պիտի հաստատէին Գերմանիոյ մէջ, բայց երեւոյթները ցոյց կուտան թէ բոլորովին ձախողած են : Իրարու չեն վստահիր եւ իրարու հետ կը վիճին : Բրիտանական կառավարութիւնը պէտք է վճռականօրէն ...

ԱՆԳԼԻԱ ամերիկեան չորս հազար միլիոն տոլարին վերջին մնացորդը — 400 միլիոն — պիտի ստանայ այս շաբթու : Այս գումարը պիտի բաւէ հազիւ քանի մը շաբաթ :

ԱԹԷՆՔԷՆ կը հաղորդեն թէ տասը լրտեսներ, որոնց մէկը պուլկար, գնդակահարուեցան չորեքշաբթի օր :

ԱՌԵՒՏՐԱԿԱՆ համաձայնութիւն մը կնքուեցաւ երկուշաբթի օր Ֆինլանտայի եւ Խորհրդային Միութեան միջեւ :

ՊՐԱԹԻՍԼԱՎԱՅԻ (Չեխոսլովաքիա) դատարանը մահուան դատապարտեց երկու Գերմանացիներ — Սլովաքիոյ նախորդ դեսպանը եւ գրաւման ուժերու հրամանատարը — որոնք ահաւոր խժդժութիւններ կատարած էին 1944ին :

★ ԱՆԳԼԻԱՑԻ յայտնի գիտնական եւ փիլիսոփայ Լորտ Րասըլ (Նախապէս Սըր Պէրթրընտ Րասըլ) յայտարարեց չորեքշաբթի օր թէ յաջորդ պատերազմը պիտի ըլլայ շատ կարճատեւ եւ ոչ այնքան ահաւոր իր վնասներով, որքան առնեն որ Ամերիկա կը պահէ հիւլէական ուժի մենաշնորհը :

146 ՆԱԽԱՍՏԻՆԵՐ խեղդուեցան Փորթուգալի ջուրերուն մէջ ուր սարսափելի փոթորիկ մը կայ քանի մը օրէ ի վեր :

ԱՄԵՐԻԿԱՅԻ ազգային դրամատունը 82 միլիոն տոլարի նոր վարկ մը յատկացուց Ֆրանսայի : Իբրեւ երաշխաւորութիւն ֆրանսական կառավարութիւնը Ամերիկայի պիտի փոխանցէ Գերմանիոյ մէջ վերագտնուած 75 թոն ձոյլ ոսկին :

ԱՄԵՐԻԿԵԱՆ կառավարութիւնը 200.000 թոն շաքար պիտի ղրկէ Գերմանիոյ ամերիկեան գօտին՝ տեղացիներուն գործածութեան համար :

ՍՊԱՆԻՈՅ 1947—48ի նիւթացոյցը խորհրդարանին պիտի ներկայացուի այս շաբթու : 1360 միլիոն տոլարի ծախքերուն մէկ երրորդը — 464 միլիոն — յատկացուած է պատերազմական պէտքերու :



ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի օրկանին,

## ՀԱՅԱՍՏԱՆԻ Ի թիւը (Նոյ.)

Ճոխ եւ այլազան բովանդակութեամբ, ՀԱՅԵՐԷՆ ԵՒ ՖՐԱՆՍԵՐԷՆ :

Վարչական հասցէ — H. Palouyan, 43 rue Richer, Paris :

Հատով կը ծախուի հայ գրատուններու՝ Հր. Սամուէլ, 51 rue Mr. le Prince, Հ. Բալուեան 43, rue Richer, Մ. Պարսամեան 46 rue Richer, լրագրավաճառի կրպակները՝ St. Denis, St. Michel, Petits Carreaux, rue des Fêtes, rue Piat, Palikao :

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՒԻԹԻ

Ցայտնի դիւցազներգութիւնը, չարահիւսեց

## Կ. ՍԱՍՈՒՆԻ

350 մեծադիր էջ, ընտիր տպագրութեամբ, գին՝ 500 ֆրանք : Կը գտնուի Փարիզի հայ գրավաճառներուն մօտ : Տպ. Պէյրութ, 1947:

## ԳՈՅԱՄԱՐՏ

ՇԱՏ ՓՆՏՌՈՒԱԾ, վերջապէս լոյս տեսած է 1948 տարեշրջանի (13րդ տարի), Հ. Յ. Դ. Նոր Սերունդի ԳՈՅԱՄԱՐՏ օրացոյցը :Այլազան եւ ճոխ բովանդակութիւն, (պատմական, աշխարհագրական, յեղափոխական եւայլն) : Ապահովեցէք հիմակուընէ ձեր շրջանի Նոր Սերնդականներէն : Գին 100 ֆրանք :




Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 Rue Damesme - 13e


ՑԵՍԱԶԳՈՒԱԾ Է Հ. Յ. Դ. Պանեջօ Քաշանի ենթակոմիտէին կողմէ«Դաշնակցութեան Օր»ուան առթիւ յառաջիկայ կիրակիի համար սարքուած հանդէսը :

ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶԻ Բարձր Հայքի (Կարին Երզնկա, Բաբերդ, Ալաշկերտ, Քղի, Բասէն եւն.) Հայր. Միութեան վարչութիւնը կարեւոր օրակարգի համար ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր անդամները, այս կիրակի 7 Դեկտ. ժամը 10ին, 221 rue Belleville, Chartonին սրճարանը : Ներկաներուն թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի :

Métro Place des Fêtes :

ՄԱՍՆԱՒՈՐ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ
ՊՈԼՍՈՅ ԷՍԱՅԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՎԱԽՃԱՆԵԱԼ
ԲՈԼՈՐ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐՈՒ ԵՒ
ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Յառաջիկայ Դեկտեմբեր 21ի կիրակին, Փարիզի Յովհ. Մկրտիչ եկեղեցին, յետ պատարագի :

Կը հրաւիրուին բոլոր էսաեանցիները որ իրենց ներկայութեամբ յարգեն անոնց յիշատակը :

ԻՍԻՐ Ծրիմեան դպրոցի վարչութիւնը իր ցաւակցութիւնը կը յայտնէ Պ. Մելիք Գրիգորեանի եւ իր պարագաներուն փոքրիկն ՄԱՐԻԻ մահուան առթիւ :

Հ. Մ. Ը. Մ.Ի ՖՐԱՆՍԱՅԻ Շրջանի Սկաուտական գործադիր մարմինը կը խնդրէ մեզմէ ծանուցանել որ համաձայն ներքին գործերու նախարարութեան 10 Հոկտեմբեր 1947 եւ թիւ RV69245 արտօնագրին, վարչութիւնը վաւերացուած է կեդրոնատեղի ունենալով հետեւեալ հասցէն՝

42, rue des Marais, Paris (10):

